բարեց. — Բանակցութիւնները կը շարունակուին Թունուզի կառավարութեան անդամներուն հետ: Դժուար է սահմանել երկրին ներքին ինքնավարութեան շրջանակը եւ բովանդակութիւնը, ապահովելով հանդերձ Ֆրանսայի քաղաքական իրաւունքները: Ալժերիոյ Ֆրանսացիներուն մէջ ալ մտավախութիւն կը տիրէ եւ կ'աշխատինք փարատել: Նոր կուսակալ մը նշանակեցինք որ ծանօթ է իբրեւ մտքի եւ գործի մարդ»:

× Անդրծովեան Ֆրանսայի (գաղթավայրեր) նոր նախարարը, Պ. Ժ. Ժիւկլա, ճառ մը խօսելով բացատրեց թէ անհրաժեշտ է բարձրացնել Հիւս. Ափրիկէի բընակչութեանց կենցաղի մակարդակը, զարկ տալով տնտեսական գործունէութեան:

× Տեղական թերթերը կը գրեն թէ Ազգ. Ժողովին այս շաբթուան վիճաբանութիւնները կրնան վճռական հետեւանքներ ունենալ դահլիճին համար: Ալժերիոյ եւ Մարոքի մասին եղած հարցապնդումներուն պատասխանելէ ետք, վարչապետը վստահութեան քուէ պիտի պահանջէ:

## ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՑՈՅՑԵՐ ՎԵՐԱԶԻՆՄԱՆ ԴԷՄ

Արեւմտեան Գերմանիոյ ընկերվարականները, որոնք հակառակ են Փարիզի համաձայնութեանց վաւերացման, բուռն պայքար մը կը մղեն երկու շաբաթէ ի վեր: Իրենց գլխաւոր պահանջն է նախ բանակցիլ Մոսկուայի հետ եւ ապահովել երկրին երկու մասերուն միացումը:

Կիրակի օր պատկառելի ցոյց մը տեղի ունեցաւ Ֆրանքֆորթի Ս. Պօղոս եկեղեցիին մէջ, որ պատմական կը մնայ 1848ի առաջին ժողովրդական խորհրդարանին գումարումով: Ներկայ էին հազար հոգի, յատկապէս ընտրուած՝ ընկերվարական կուսակցութեան կողմէ, վաւերացնելու համար «գերմանական յայտարարութիւն մը» որուն տակ ստորագրած էին արդէն 250 ձախակողմեան դէմքեր: Այժմ կը մընայ կարելի եղածին չափ շատ ստորագրութիւններ հաւաքել այս յայտարարութեան համար որ կ'ըսէ.

— «Հասած է ժամը հանդիսաւորապէս հրաւիրելու ժողովուրդը եւ կառավարութիւնը որ վճռական դիմադրութիւն մը ցոյց տան, մեր ազգը վերջնապէս պառակտելու որեւէ ձգտումի: Կը դիմենք խորհրդարանին եւ կառավարութեան: Կը պահանջենք նախապատուութիւն տալ Զորսերու համաձայնութեան, զինուորական խմբակցութեանց մասին: Գերման ժողովուրդը իրաւունք ունի վերահաստատելու իր միութիւնը»:

Ճառախօսները իրենց տեսակէտները պարզեցին աւելի շատ երկիւղած կամ հանդիսաւոր, քան թէ քաղաքական մթնոլորտի մը մէջ, մասնաւորապէս պահանջելով նոր ընտրութիւններ կատարել եւ ժողովրդական խմբակցութիւն մը կազմել վարչապետին Տոքթ. Ատընաուըրի դէմ:

Վարչապետը իր պատասխանը տուած էր արդէն ընկերվարական կուսակցութեան վարիչին ուղղուած նամակով մը, ուր կ'ըսէ. — «Չի բաւեր համաձայնիլ Խ. Միութեան հետ, երկիրը միացնելու համար: Մենք պէտք ունինք արեւմտեան պետութեանց հաւանութեան: Այդ պետութիւնները յանձն առած են պաշտպանել վերամիացման ծրագիրը, պայմանաւ որ մենք վաւերացնենք Փարիզի համաձայնութիւնները: Եթէ չվաւերացնենք, պիտի խախտի այդ յանձնառութիւնը եւ մենք նմանօրինակ յանձնառութիւն մը պիտի չստանանք Խ. Միութենէն: Կարճ խօսքով, մենք պարզապէս կղզիացման պիտի դատապարտուինք, մնալով առանց բարեկամներու: Ընդհակառակն, վաւերացումէն ետք, պիտի կրնանք բանակցութիւններ կատարել արեւմտեան պետութեանց հաւանութեամբ»:

ՄԵՆԱՄԱՐՏԻ հրաւէրը ետ առնուեցաւ նախորդ ելմտական նախարար Պ. Էտկար Ֆորի կողմէ, վարչապետին միջամտութեամբ:

ՄԱՐԶԱԿԱՆ. — Փետուր ծանրութեանց Եւրոպայի ախոյեանը, Ֆամըչօն, իր տիտղոսը պաշտպանեց շաբաթ իրիկուն Միլանի մէջ, իտալացի Միլանի դէմ: Շնորհիւ կէտերով իր տարած յաղթանակին, Ֆամըչօն կը մնայ ախոյեան: — Ֆութպոլի կիրակի օրուան հանդիպումներէն վերջ, ախոյենական դասաւորման առաջիններն են Ռէնս եւ Թուլուզ 32 կէտերով:

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ԵՒ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Առնուվիլի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Կառվարենց» խումբին կողմէ, Կիրակի 6 Փետրուար ժամը 15ին Սալ Կալման, (Փլաս տը լա Կար):

Կը ներկայացուի ԲԱԽՏԻՆ ԱՆԻՒԸ (Գրիգոր Վահանի), Թատերգ. 3 արար Ղեկավարութեամբ Պ. Միհրան Շիշմանեանի:

Գեղարուեստական ճոխ բաժին, մասնակցութեամբ Անիէռ — Իսիի երգչախումբին ղեկավարութեամբ Պ. Գայիշեանի: Ժամը 19էն սկսեալ եւրոպական պար,

Հաղորդակց. միջոց. — Շոգեկառք Կառ տիւ Նորէն ժամը 14.40, Օթօպիւս Փորթ տը լա Շափէլ 256 թիւ:

### ՆՈՒԷՐՆԵՐ

Փարիզէն Պ. Պարսամեան երկու հազար ֆրանք կը նուիրէ Յ. Կ. Խաչի օգնութեան կայանի շէնքին, հազար ֆր. Պէյրութի Ն. Փալանճեան ճեմարանին: Ստանալ «Յառաջ»էն:





### ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՄՇԱԿ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԵՒ ՆՇԱՆ ՓԱԼԱՆՃԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻ

ՔՍԱՆՀԻՆԳԱՄԵԱՅ ՅՈԲԵԼԵԱՆԻ

ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ ԿՐԹԱԿԱՆ ՆԱԽԱՐԱՐՈՒԹԵԱՆ ԲԱՐՁՐ ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

Տեղի պիտի ունենայ Սորպոնի մեծ ամփիթատրոնին մէջ, 27 Փետրուար, կիրակի, ժամը 15ին:

ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է

Այս առթիւ հրապարակ հանուած են նուիրատոմսեր:

Բոլոր նուէրները պիտի ծանուցուին «Յառաջ»ի մէջ:

Ձեր նուէրները կրնաք ղրկել նաեւ «Յառաջ»ի կամ հայ գրավաճառներուն միջոցաւ, կամ յանձնել անոնց որ պիտի ներկայանան, փոխան ստացագիր — նուիրատոմսի:

### Ս. ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Թատերական ներկայացումները տեղի պիտի ունենան կիրակի 13 Փետրուարին, կէսօրէն վերջ ժամը ճիշդ 4ին:

Մանրամասնութիւնները յաջորդով:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՎԻԷՆ. — Յ. Կ. Խաչի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Ագպըլըլգեանէ երկու հազար ֆր. իրենց զաւկին վեցերորդ տարելիցին առթիւ:

Օր. ՇԱՔԷ ՆՈՐԱՇԽԱՐՀԵԱՆ
Քաքիթէն ՎԱԶԳԷՆ ՓԱՇԱՊԷՉԵԱՆ
Ամուսնացած
Պէյրութ — Մէյ

### ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Յառաջիկայ չորեքշաբթի երեկոյ Քատէի վերնայարկը:

Կը խօսի Պ. Թ. ԳԱՌՆԻԿ:

Նիւթ՝ Հերոսամարտները եւ հայութիւնը: Մուտքը ազատ է:



Imp. Araxes - 46, Rue Richer. Paris (9e)

